Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 9

ՄԱՅԻՍ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Отдел пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 8

Գինը 1 ռուբ.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 9

ՄԱՅԻՍ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 9

ՄԱՅԻՍ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 9

ՄԱՅԻՍ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





## ՊԱՐՏԻԱՅԻ ԱՄԵՆԱՍՈՒՐ ԵՎ ԱՄԵՆԱՈՒԺԵՂ ԶԵՆՔԸ

*Սրանից 34 տարի առաջ, 1912 թվի մայիսի 5-ին լույս տեսավ «Պրավդա» թերթի առաջին համարը։ «Պրավդայի» երևան գալու պատվին որոշվեց մայիսի 5-ը համարել բոլշևիկյան մամուլի տոնի օր։*

*Ամեն տարի այդ օրը մեր երկրի բազմամիլիոն ընթերցողները մի անգամ ևս վերհիշում են բոլշևիկյան մամուլի դրոշակակիր «Պրավդայի» և նրա մարտական տրադիցիաներով դաստիարակված մեր բազմաթիվ և բազմանուն թերթերի անցած ուղին, հանրագումարի բերում կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում նրանց կատարած աշխատանքը։*

⁂

*1912 թվականի ապրիլ—մայիս ամիսներին սկսվում է ռևոլյուցիոն շարժման խիկայան վերելք։ Լենայի դեպքերի կապակցությամբ*

բռնկվում են մասսայական քաղաքական գործադուլներ՝ Մոսկվայում, Պետերբուրգում և բազմաթիվ այլ վայրերում։

Ընկեր Ստալինի պատկերավոր բնորոշմամբ՝ «Լենայի կրակոցները կոտրեցին լռության սառույցը, և— ժողովրդական շարժման գետը շարժվեց»։

Հակառակ թշնամական տարրերի պնդումին, ռևոլյուցիան չէր մեռել, բանվոր դասակարգի մեջ կենդանի էին պայքարելու անսպառ եռանդն ու ուժերը։

Բոլշևիկների պարտիան և նրա առաջնորդներ Լենինն ու Ստալինը համախմբում էին այդ ուժերը և նախապատրաստում նոր մարտերի համար։

Ռևոլյուցիայի վերելքի պայմաններում պարտիային անհրաժեշտ էր ունենալ բանվորական ամենօրյա լրագիր։

Եվ ահա իր կազմակերպությունները ամրապնդելու և մասսաների մեջ ազդեցություն նվաճելու համար պարտիան որոշեց հրատարակել «Պրավդա» ամենօրյա թերթը։

«Պրավդան» հիմնվեց Լենինի ցուցումով, Ստալինի նախաձեռնությամբ։

«Պրավդան» իր հրատարակման առաջին իսկ օրից տարածվեց աշխատավորական ա-



մենալայն խավերի մեջ, որովհետև նա այն միակ թերթն էր, որը ճշմարիտ խոսք էր ասում բանվոր դասակարգի և գյուղացիության դրության մասին, ցույց էր տալիս նրանց կապիտալիզմի և ցարիզմի կապանքներից ազատվելու ճիշտ ուղիները։

Ցարական դաժան գրաքննությունը, իհարկե, դուր չէին գալիս «Պրավդայի» մերկացումները և ոստիկանությունը անդադար հալածանքներ էր կազմակերպում։ Երկու և կես տարվա ընթացքում ութ անգամ փակվեց «Պրավդան», բայց բանվորների աջակցությամբ նա նորից էր սկսվում հրատարակվել։

Ցարական ինքնակալության բազմաթիվ հալածանքները չկարողացան ընկճել «Պրավդային», որովհետև «Պրավդան» ծնվել էր ռևոլյուցիայի վերելքի հետ, և իր հետևում ուներ կանգնած տասնյակ և հարյուրհազարավոր բանվորներ։ Հենց այդ տարիներին էր, որ դրվեց մասսայական բոլշևիկյան պարտիայի ամուր հիմքը։

«1912 թվականի «Պրավդան» այն հիմքն էր, որ դրվեց բոլշևիզմի 1917 թվի հաղթանակի համար» (ՍՏԱԼԻՆ)։

«Պրավդան» պարտիայի հիմնական լեգալ հենակետերից մեկն էր ռեվոլյուցիայի վերելքի տարիներին։

Բոլշևիկյան «Պրավդան» վիթխարի դեր խաղաց ցարիզմի դեմ վճռական գրոհի օրերին, իսկ երբ հաղթանակեց Հոկտեմբերը, նոր ուժով սկսեց հնչել «Պրավդայի» ձայնը։ Այդ ձայնը հասավ սովետական անծայրածիր երկրի բոլոր անկյունները, կազմակերպեց ու ստեղծագործ պայքարի կոչեց միլիոնավոր մարդկանց։

Անգնահատելի աշխատանք կատարեց «Պրավդան» երկրի խաղաղ շինարարության տարիներին։ Է՛լ ավելի եռանդուն և արդյունավետ էր «Պրավդայի» մղած պայքարը Հայրենական պատերազմի տարիներին։

«Պրավդան» կատարում էր ռազմաճակատային թերթի դեր։ Պատերազմի օրերին իր շուրջը համախմբելով երկրի ամենալավագույն գրողներին, նա ամեն օր իր էջերից անձնազոհ պայքարի ու աշխատանքի էր կոչում ռազմաճակատի և թիկունքի մարդկանց։

«Պրավդան» իրեն հատուկ անողորմությամբ մերկացնում էր մեր Հայրենիքի վրա



ձեռք բարձրացրած թշնամիների նողկալի դեմքը, մասսաներին դաստիարակում էր ջերմ հայրենասիրության ոգով, արմատավորում նրանց սրտում հաղթանակի հավատը։

«Պրավդայում» տպագրված յուրաքանչյուր առաջնորդող, ակնարկ կամ հոդված մի վիթխարի ուժի ռումբ էր նետած թշնամիների գլխին։

Ահա թե ինչու նրան ատում են մեր հակառակորդները և միաժամանակ վախենում նրանից։ Դրա փոխարեն, սովետական ժողովուրդը անսահմանորեն սիրում է իր հույզերի ու ձգտումների լավագույն արտահայտիչ «Պրավդային»։

«Պրավդան» վիթխարի հեղինակություն է վայելում իր միլիոնավոր ընթերցողների մոտ։ Ընկեր Մ. Ի. Կալինինը ասել է.

— «Պրավդան» աշխարհում միակ թերթն է, որի նմանը չի եղել և չկա այժմ։ ...«Պրավդան» միշտ անմիջականորեն մասնակցում է ժողովրդի առաջ կանգնած հարցերի լուծմանը։ Եվ եթե «Պրավդան» սովետական ժողովրդի մեջ վայելում է մեծ հարգանք, դրա փոխարեն ժողովրդի ազդե-

ցությունը, նրա զգացմունքներն ու ձըգտումները միշտ կենդանի արձագանք են գտնում «Պրավդայում»:

***

Տարիներ առաջ ընկեր Ստալինն ասել է. «Մամուլը պետք է աճի ոչ թե օրերով, այլ ժամերով,— դա մեր պարտիայի ամենասուր և ամենաուժեղ զենքն է»:

Սրբությամբ կատարելով մեծ առաջնորդի այդ ցուցումը, մեր մամուլը սովետական իշխանության գոյության տարիներին աճել է հեքիաթային չափերով:

Բոլշևիկների պարտիան և սովետական պետությունը մամուլի համար ստեղծել են ամուր և հաստատուն նյութական բազա: Այդ բազան անշեղորեն աճում է, զարգանում և ընդարձակվում:

Մինչհեղափոխական Ռուսաստանում ժողովուրդների ճնշող մեծամասնությունը չուներ իր մամուլը: ՍՍՌՄ-ում դեռ 1937 թվին թերթերը լույս էին տեսնում 69 լեզուներով: Այն ժամանակ, երբ թերթերի ընդհանուր քանակը մեզանում աճել է 10 անգամ, ազգային թերթերի քանակը աճել է 31 անգամ:



Թերթերի տիրաժը 1913 թվի համեմատությամբ մեզանում աճել է համարյա 14 անգամ:

Գրքեր տպագրվում են ՍՍՌՄ-ի ժողովուրդների 111 լեզուներով (1913 թվին միայն 49 լեզվով):

Քառասունից ավելի ժողովուրդներ իրենց գիրն ու գրականությունը ստեղծել են սովետական իշխանության օրոք միայն: Այժմ ազգային լեզուներով հրատարակվող գրքերը մի քանի տասնյակ անգամ շատ են քան 1913 թվին:

Մամուլը ՍՍՌՄ-ում արտացոլում է ժողովուրդների բարեկամությունը, նրանց կուլտուրայի ծաղկումը: Ազգային գրականության լավագույն նմուշները դառնում են Սովետական Միության բոլոր ժողովուրդների ընդհանուր ունեցվածքը:

Մեզ մոտ հսկայական տիրաժներով հրատարակվում են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը: Մարքսի, Էնգելսի, Լենինի, Ստալինի երկերը հրատարակված են ավելի քան 400 միլիոն օրինակ տիրաժով: «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացը» միայն 1938 թվի ընթացքում տարածվեց 14 միլիոն օրինակ տիրաժով:

Պատերազմից առաջ ՍՍՌՄ-ում տարեկան լույս էին տեսնում մոտավորապես 800 միլիոն օրինակ գրքեր. այդ երեք անգամ ավելի է քան Ամերիկայի Միացյալ Նահանգներում:

Կապիտալիստական երկրներում կրճատվում է սոցիալ-տնտեսական հարցերի, գյուղատնտեսության, բնագիտության վերաբերյալ գրքերի հրատարակումը: Միաժամանակ աճում է կրոնի, ռազմական հարցերի վերաբերյալ գրքերի հրատարակումը: Անգլիայում կրոնական հարցերի վերաբերյալ հրատարակվում են 4 անգամ ավելի գրքեր, քան թե գյուղատնտեսության վերաբերյալ, երեք անգամ ավելի՝ քան փիլիսոփայության վերաբերյալ, մեկ ու կես անգամ ավելի՝ քան պատմության վերաբերյալ:

Պատերազմից առաջ տեխնիկայի վերաբերյալ հրատարակված գրքերը կազմում էր Գերմանիայում— 8 տոկոս, Իտալիայում— 4 տոկոս, ԱՄՆ-ում 3,7 տոկոս, մինչդեռ ՍՍՌՄ-ում— 25 տոկոս:

Հայրենական պատերազմի տարիներին մեծ չափերով աճեց մեր ռազմաճակատային մամուլը: Բանակային թերթերը ամեն օր, ամեն ժամ, մեր մարտիկներին կոչ էին



անում՝ է՛լ ավելի ամուր ու շեշտակի դարձնել իրենց հարվածները և պայքարից հաղթող դուրս գալ: Նրանք իրենց էջերում տպագրում էին Կարմիր Բանակի մեծ զորավար ընկեր Ստալինի զեկուցումները, ճառերն ու հրամանները և հասցնում դրանք մինչև առաջին գիծը, մինչև կռվող զինվորի խրամատները:

Այդ փաստաթղթերը միլիոնավոր օրինակներով տպագրվում էին նաև մեր թիկունքում հրատարակվող թերթերի էջերում, հրատարակչությունների միջոցով՝ սովետական ժողովուրդների բազմաթիվ լեզուներով:

Ու ամենուրեք, ռազմաճակատում, թե թիկունքում ֆաշիզմի և իմպերիալիզմի սև ուժերի դեմ սրբազան գոտեմարտի ելած մեր ժողովուրդը լսում էր իր հանճարեղ առաջնորդի բոցավառ խոսքը, որն իր բյուրեղյա պարզությամբ ու խորաթափանցությամբ գերում էր միլիոնների սրտերը, գոտեպնդում նրանց մեր արդար գործի հաղթանակի հավատով և անձնուրաց պայքարի ու աշխատանքի մղում:

***

Բոլշևիկյան «Պրավդայի» մարտական տրադիցիաներով դաստիարակված մեր մամուլը խոշոր և անուրանալի աշխատանք է կատարել մեր երկրի զարգացման բոլոր էտապներում: Նա սովետական ժողովուրդների բոլոր հաղթանակների մեջ ունի իր բաժինը: Իր դերը նա պատվով էր կատարում նաև Հայրենական պատերազմի տարիներին: Սակայն քիչ գործ չունի անելու մեր մամուլը այժմ, երբ սովետական ժողովուրդները նորից անցել են խաղաղ ստեղծագործական աշխատանքի:

Մեր Հայրենիքի վերականգնման և զարգացման չորրորդ հնգամյա պլանը նոր, է՛լ ավելի պայծառ հեռանկարներ է գծում սովետական ժողովրդի համար:

Բոլշևիկների պարտիան և ընկեր Ստալինը ժողովրդի առաջ խնդիր են դրել՝ ոչ միայն հասնել նախապատերազմյան մակարդակին, այլև գերազանցել այդ մակարդակը:

Կասկած չկա, որ այս անգամ էլ սովետական ժողովուրդը ժամանակին ու անթերի կկատարի իր հարազատ պարտիայի ու մեծ առաջնորդի առաջադրած խնդիրը:



Սակայն, ինչպես սովորեցնում է մեզ ընկեր Ստալինը, հաղթանակը ինքն իրեն չի գալիս, այն պետք է նվաճել համառ պայքարով ու աշխատանքով:

Նոր հնգամյակի կատարումը նույնպես կպահանջի մեր բոլոր ուժերի լարումը, մեծագույն եռանդ և կորով:

Այդ պայքարում ևս մեծ դեր է վիճակված կատարելու մեր մամուլին:

Մենք չենք կարող մոռանալ Վ. Ի. Լենինի ցուցումն այն մասին, որ «Թերթը ոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ և կոլեկտիվ ագիտատոր է, այլև կոլեկտիվ կազմակերպիչ»: Ահա թե ինչու նա պետք է կազմակերպի մասսաներին, համախմբի և ոգեվորի նրանց՝ նոր հնգամյակի խնդիրները կատարելու համար: Իսկ այդ հնարավոր կլինի միայն այն դեպքում, երբ մեր մամուլը չթուլացնի, այլ օրավուր է՛լ ավելի ամրապնդի իր կապերը մեր երկրի ամենալայն մասսաների հետ:

Նման աշխատանքի փայլուն օրինակներ է տալիս մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի մարտական օրգան «Պրավդան»: Ինչպես միշտ, նոր հնգամյակի համար մղվող պայքարում ևս, մեր թերթերը՝ ռես-

պուբլիկական և շրջանային, պետք է օրինակ վերցնեն «Պրավդայից»։

Այժմ մեր ռեսպուբլիկայի մամուլի հիմնական խնդիրն է՝ օգնել մեր պարտիական կազմակերպություններին հնգամյա պլանի մասին Օրենքը հասցնելու բոլոր աշխատավորներին, այն հաշվով, որպեսզի յուրաքանչյուր մարդ հնգամյակի մասին ոչ միայն ընդհանուր պատկերացում ունենա, այլև կոնկրետ կերպով տեղյակ լինի իր գործարանի, ձեռնարկության կամ կոլխոզի հեռանկարներին։ Ավելին. ամեն մի աշխատավոր պետք է որոշի իր տեղը հնգամյակի համար մղվող պայքարում։

Սակայն սրանով էլ դեռ գործը չի սպառվում, որովհետև «Թերթի դերը չի սահմանափակվում միայն գաղափարների տարածմամբ...» (ԼԵՆԻՆ)։ Մեր թերթերը չեն կարող միայն հնգամյա պլանի մասին թվեր, գրույցներ տպագրել և ավարտված համարել իրենց միսիան։ Այստեղ է, որ թերթը պիտի հանդես գա մասսաների կոլեկտիվ կազմակերպչի իր դերում։

Չորրորդ հնգամյակի պլանների իրագործման հաջողությունը մեծ չափով կախ-



ված է հնգամյակի առաջին տարվա առաջադրանքների անթերի կատարումից։ Մեր թերթերը իրենց ամենօրյա աշխատանքով պետք է ամեն կերպ օժանդակեն գյուղի և քաղաքի աշխատավորներին այդ խնդիրը կատարելու համար։

***

Ամեն տարի նշելով բոլշևիկյան մամուլի օրը, մենք սովորաբար հանրագումարի ենք բերում մեր մամուլի կատարած աշխատանքը, բայց երբեք չենք հրաժարվում մեր թերությունների մասին խոսելուց։

Ինչ խոսք, որ մեր թերթերը անցած տարվա ընթացքում կատարած իրենց աշխատանքների մեջ զգալի նվաճումների են հասել։ Սակայն չենք կարող ասել, թե նրանք պակասավոր կողմեր չունեն։ Թերություններ կան և դրանք քիչ չեն, նամանավանդ, մեր շրջանային թերթերում։

Հենց այն փաստը, որ մեր մի շարք շրջանային թերթեր հնգամյակի հարցերի լուսաբանումը սկսեցին մեծ ուշացումով, և այժմ էլ անբավարար աշխատանք են կատարում այդ ուղղությամբ, ցույց է

տալիս, որ նրանք լրիվ չափով չեն հասկա-
ցել իրենց դերը։

Մեր մի շարք շրջանային թերթերում տպագրվող նյութերի որակը դեռ ցածր է, վատ և հաճախ անտանելի է նրանց լեզուն, տեխնիկական ձևավորումը, տպագրությունը։ Միանգամայն թույլ է գյուղթղթակիցների մեջ տարվող աշխատանքը։

Մեր թերթերի թերությունների մասին ավելի կոնկրետ ձևով պետք է խոսվեն մամուլի օրվա կապակցությամբ տեղերում կազմակերպվելիք ժողովներում և միջոցներ նշվեն դրանք խսպառ վերացնելու համար։

Քննադատելով իր սեփական թերությունները, խստապահանջ լինելով իր կատարած աշխատանքի նկատմամբ, մեր մամուլը Ստալինյան չորրորդ հնգամյակի կենսագործման համար մղվող պայքարում կկատարի իր կարևոր դերը։

---

# ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԵՆ ՊԵՏՈՒԹՅԱՆԸ

Սովետական փոխառությունները ամենացայտուն ձևերից մեկն են, որով արտահայտվում է համաժողովրդական օգնությունը պետությանը։

ՍՍՌՄ-ում փոխառությունների տարածման բազմամյա փորձը ցույց է տալիս, որ դրանք բնակչության մեջ վայելում են հսկայական ժողովրդականություն։

Սովետների երկրի յուրաքանչյուր քաղաքացու համար միշտ պատվի գործ է եղել իր խնայողություններով մասնակցել սոցիալիստական հասարակության շինարարությանը, պետության ռազմական ուժի անընդհատ ամրապնդմանը։

Ժողովրդի կողմից պետությանը ցույց տրվող համաժողովրդական լայն օգնության մասին է վկայում տարեցտարի բաժանորդների քանակի և բաժնեգրության գումարի անշեղ աճումը։

1927 թվին Ինդուստրացման Առաջին Փոխառությանը բաժնեգրվեց վեց միլիոն մարդ՝ 200 միլիոն ռուբլի գումարով։ 1930 թվին «Հնգամյակը չորս տարում» փոխառությունը տարածվեց 1 միլիարդ 25 միլիոն ռուբլի գումարով, իսկ բաժնեգրվողների թիվը հասավ 12 միլիոնի։ «Երկրորդ հնգամյակի» (առաջին տարվա բաժնի) փոխառությունը տարածվեց ավելի քան 3 միլիարդ 76 միլիոն ռուբլի գումարով և այդ փոխառությանը բաժնեգրվեց ավելի քան 40 միլիոն մարդ։ «Երրորդ հնգամյակի» (առաջին տարվա բաժնի) փոխառության բաժնեգրության գումարը կազմեց 5 միլիարդ 928 միլիոն ռուբլի, իսկ փոխառությանը մասնակցեցին ավելի քան 50 միլիոն մարդ։

Հիտլերյան Գերմանիայի դեմ մղված և իր չափերով չտեսնված պատերազմը պահանջեց բացառիկ լարում և մեր երկրի նյութական ու դրամական հսկայական ռեսուրսների մոբիլիզացիա։ Այդ պատճառով Հայրենական մեծ պատերազմի ժամանակ բաց թողնված փոխառությունները առանձնապես խոշոր հաջողություն ունեցան։ Նրանք տարածվեցին կարճ ժամկետներում



և զգալիորեն գերազանցեցին նախատեսված գումարները։

Ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ մղված պատերազմի տարիներին, 1941 թվի հունիսից մինչև 1945 թվի սեպտեմբերը, պետական փոխառություններ թողարկելու միջոցով պետական բյուջեի մեջ ներգրավվեց ավելի քան 76 միլիարդ ռուբլի, այդ թվում Հայաստանում ավելի քան 790 միլիոն ռուբլի, իսկ Հայրենական մեծ պատերազմին նախորդող ժամանակաշրջանում բնակչության մեջ տարածված փոխառություններից պետական բյուջեն ստացավ 50 միլիարդ ռուբլի։

1942 թվի Պետական Ռազմական Փոխառությունը, որը բաց թողնվեց 10 միլիարդ ռուբլու գումարով, տարածվեց 13 միլիարդ 186 միլիոն ռուբլու գումարով։ Պետական Ռազմական Երկրորդ Փոխառությունը բաց թողնվեց 12 միլիարդ ռուբլու գումարով, իսկ նրա բաժնեգրությունը կազմեց 20 միլիարդ 843 միլիոն ռուբլի։ Ռազմական Երրորդ Փոխառությունը բաց թողնվեց 25 միլիարդ ռուբլու գումարով, տարածվեց 28 միլիարդ 955 միլիոն ռուբ-

լու գումարով և վերջապես Պետական Ռազմական Չորրորդ Փոխառությունը, որը նույնպես բաց թողնվեց 25 միլիարդ ռուբլու գումարով, իրացվեց 26 միլիարդ 170 միլիոն ռուբլու գումարով։

Պաշտպանության ֆոնդի և Կարմիր Բանակի ֆոնդի օգտին 1941 թվից մինչև 1944 թիվը ստացվեց ավելի քան 16 միլիարդ ռուբլի կանխիկ փողով, 4 միլիարդ 500 միլիոն ռուբլի պետական փոխառությունների պարտատոմսերով, մեծ քանակությամբ զանազան արժեքներ և պարենամթերք։ Բացառիկ հաջողությամբ տարածվեցին չորս Դրամա-իրային վիճակախաղերը՝ 12 միլիարդ 500 միլիոն ռուբլու գումարով։

Վերոհիշյալ թվերը հանդիսանում են սովետական ժողովրդի միասնության ու համախմբվածության, նրա հայրենասիրության, հայրենիքի նկատմամբ նրա նվիրվածության և մեծ Ստալինի նկատմամբ նրա անսահման սիրո ցայտուն արտահայտությունը։

Սովետական փոխառությունների մեջ սերտորեն զուգորդվում են պետական շահերը յուրաքանչյուր պարտատոմսատիրոջ անհա-



տական շահերի հետ։ Պետական փոխառությունները բնակչությանը բերում են զգալի եկամուտներ փոխառության շահումների և տոկոսների ձևով։

Այսպես, 1941 թվի հուլիսի 1-ից մինչև 1945 թվի հունվարի 1-ը վճարվել է 3 միլիարդ 600 միլիոն ռուբլու շահում։

Խաղաղ շինարարության տարիներին փոխառություններից ստացված այն միջոցները, որ ՍՍՌՄ աշխատավորները կամավոր կերպով փոխ էին տալիս պետությանը, ծախսվում էին մեր ժողովրդական տնտեսության զարգացման, կուլտուրայի բարձրացման, ժողովրդական մասսաների բարեկեցության աճման և երկրի պաշտպանունակության ամրապնդման համար։ Այդ փոխառությունների միջոցներով կառուցվեցին շատ գործարաններ, ՄՏ կայաններ, դպրոցներ, հիվանդանոցներ, բնակելի տներ, թատրոններ, ակումբներ և այլն։

Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանում սովետական փոխառությունները նպաստեցին մեր երկրի ռազմական հզորությունը ամրապնդելու, սպառազինության արտադրությունն ավելացնելու, պանծալի Կարմիր Բանակը առաջնակարգ

մարտական տեխնիկայով զինելու և պաշտպանական ինդուստրիան ամեն կերպ ընդլայնելու գործին։

Այդ տարիներին պետությանը փոխ տրված սովետական աշխատավորների միջոցները նպաստեցին հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի խորտակումը արագացնելուն և նրանց անվերապահ կապիտուլյացիային։

Ներկայումս՝ խաղաղ շինարարության ժամանակաշրջանում, մեր երկրի առաջ դրվում են նոր, հսկայական կարևորության և մասշտաբի խնդիրներ։

Սովետական ժողովուրդը սկսել է ստալինյան չորրորդ հնգամյակի վիթխարի պլանների կենսագործումը։

Հնգամյա պլանի դրված խնդիրները լուծելու համար պետք է մշտապես պայքարել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ներքին ռեսուրսները, ինչպես նաև մեծ դրամական միջոցներ մոբիլիզացնելու համար։ Այդ ժամանակաշրջանում պետական փոխառությունները պետք է դառնան բնակչության միջոցները ներգրավելու կարևորագույն աղբյուրներից մեկը։

Մեր երկրի ժողովուրդները, մասնակցելով անցկացվող փոխառություններին, երկրին տալիս են լրացուցիչ միջոցներ ժողովրդական տնտեսությունը վերականգնելու և էլ ավելի զարգացնելու, կուլտուրան բարձրացնելու, բնակչության նյութական բարեկեցությունը լավացնելու, Սովետական Միության տնտեսական և ռազմական հզորությունը հետագայում էլ ավելի ամրապնդելու համար։



Լ. ՍՏԵՓԱՆՅԱՆ
(Հայկական ՍՍՌ Ֆինանսների Մինիստրի տեղակալ)

———О———

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-Ի ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի Առաջին Սեսիայի կողմից հաստատված Սովետական Միության ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թվականների հնգամյա պլանը նախատեսում է Սովետական Միության առանձին ռեսպուբլիկաների, այդ թվում Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բուռն զարգացումը։*

*Ստալինյան չորրորդ հնգամյա պլանը Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության և հատկապես արդյունաբերության զարգացման առաջ բաց է անում նոր, ավելի պայծառ հեռանկարներ։ Եթե Սովետական Միության արդյունաբերության համախառն ամբողջ արտադրանքի աճը 1950 թվականին 1940 թվականի համեմատությամբ կազմելու է 48 տոկոս, ապա*



*այդ նույն ժամանակամիջոցում Հայկական ՍՍՌ արդյունաբերության արտադրանքի ծավալը կաճի 2,1 անգամ։*

*Հնգամյա պլանով Հայկական ՍՍՌ-ում կապիտալ ներդրումների ծավալը 1946—1950 թվականների համար հաստատված է մեկ միլիարդ 420 միլիոն ռուբլի։*

*Այդ թվերի մեջ արտահայտված է բոլշևիկյան պարտիայի, Սովետական իշխանության և անձամբ ընկեր Ստալինի մեծ հոգատարությունը հայ ժողովրդի նկատմամբ։*

*Ինչպես Սովետական Միության, այնպես և մեր ռեսպուբլիկայի համար առաջնակարգ խնդիր է հանդիսանում զարգացնել ծանր արդյունաբերությունը, որը հիմնականում ներկայացված է հետևյալ ճյուղերով՝ էներգետիկա, քիմիական արդյունաբերություն, գունավոր մետալուրգիա, մեքենաշինություն և էլեկտրոարդյունաբերություն։*

## ԷՆԵՐԳԵՏԻԿԱ

*Ռեսպուբլիկայի էներգետիկ և վառելիքային ընդհանուր ռեսուրսներում հիդրոէներգիան ունի շատ մեծ տեսակարար կշիռ։ Նա հասնում է 92 տոկոսի և այդ պատճա-*

ռով էներգետիկայի զարգացմանը շատ լուրջ ուշադրություն է նվիրված։

Չորրորդ հնգամյա պլանը նախատեսում է Հայաստանում էներգետիկայի հետագա հզոր զարգացում։ 1950 թվին կարտադրվի երկու անգամ ավելի էլեկտրոէներգիա քան 1945 թվին։

Ռեսպուբլիկայի հիդրոռեսուրսների պոտենցիալ պաշարներում իր որակական և քանակական բարձր ցուցանիշներով առանձնապես աչքի է ընկնում Սևան—Զանգու կասկադը։

Սևան—Զանգու կասկադի սխեմայով ենթադրվում է օգտագործել Զանգու գետի անկումը մոտ 900 մետրի վրա։ Գետի ափերին կառուցվում է յոթ հիդրոկայան։ Կասկադի հիդրոկայանների ընդհանուր կարողությունը հավասար կլինի Դնեպրի հիդրոկայանի կարողությանը։ Այդ էլեկտրոկայաններից երկուսը— Երևանի և Քանաքեռի կայանները կառուցվել ու գործում են։

Չորրորդ հնգամյակում կառուցվելու է Գյումուշի հիդրոէլեկտրոկայանը, որը կհանդիսանա Սևան—Զանգու կասկադի ամենաուժեղ կայանը։ Հիդրոկայանի առաջին հերթը պետք է գործարկվի 1950 թվակա-



նին։ Հիդրոկայանի կարողությունը կազմելու է 214 հազար կիլովատ, որը ռեսպուբլիկայում գործող բոլոր կայանների կարողությանը կգերազանցի երկու անգամ։ Գյումուշհէկի շինարարությունը ավարտելու է Երևան—Ախտա երկաթուղու կառուցումը 58 կիլոմետր երկարությամբ, որը հետագայում հասնելու է մինչև Սևան։

Չորրորդ հնգամյակում պետք է գործարկվի ներկայումս կառուցվող Լճային կայանը, որի կարողությունն է 32 հազար կիլովատ։

Հիշյալ հիդրոկայանները լրիվ կարողությամբ գործարկվելուց հետո Հայկական ՍՍՌ-ում էլեկտրոէներգիայի արտադրությունը կհասցվի 1 միլիարդ 800 միլիոն կիլովատ ժամի։

Ռեսպուբլիկայի հիդրոշինարարության բարձր տեմպերը պայմաններ կստեղծեն արդյունաբերության հետագա հզոր զարգացման համար։

## ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Էժան հիդրոէներգիայի հիման վրա չորրորդ հնգամյակում ապահովվում է քիմիա-

կան արդյունաբերության հետագա զարգացումը Հայաստանում։

Կզարգանա կարբիդկալցիումի և նրանից ստացվող նյութերի արտադրությունը։

Սինթետիկ կաուչուկի արտադրությունը կավելանա չորս անգամ։ Կաուչուկի հետ միասին կարտադրվի նաև կաուստիկ սոդա, որի արտադրանքը հնգամյակի վերջում կհասնի 12 հազար տոննայի։

Կալցիումի ավտոդողերի արտադրության ընդարձակումը, որը կհասնի տարեկան 180 հազարի։

Չորրորդ հնգամյակի տարիներին հիմնականում կլուծվի ռեսպուբլիկայում քիմիական կարևորագույն պարարտանյութերի նկատմամբ գյուղատնտեսության պահանջը բավարարելու հարցը։ Գործարկման կհանձնվի տեխնիկայի վերջին խոսքով կառուցվող ազոտային պարարտանյութերի հզոր գործարանը Կիրովականում և Ալավերդու սուպերֆոսֆատի գործարանը՝ տարեկան 20 հազար տոննա արտադրական կարողությամբ։

Չորրորդ հնգամյակի տարիներին ընդարձակվելու է Կիրովականի քիմիական կոմբինատը։ Կարբիդի ցեխի կարողությունը



ռեապատկվելու է։ Կարբիդկալցիումից պատրաստվելու են չափազանց արժեքավոր այնպիսի նյութեր, ինչպիսիք են՝ քացախի անհիդրիդը, էթիլային սպիրտը և քացախաթթուն։

Բացի վերոհիշյալից, Կիրովականում կազմակերպվելու է մեծարժեք պրեսոշինների արտադրությունը, որոնք ելակետային հումք կծառայեն Երևանի «պոլիվինիլացետատ» գործարանում լայն սպառման առարկաներ արտադրելու համար։

## ԳՈՒՆԱՎՈՐ ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱ

Չորրորդ հնգամյակի տարիներին ապահովվելու է պղնձահանքի հանույթի հետագա ավելացումը, կոնցենտրատների և սև պղնձի արտադրությունը։

Ամենամոտ ժամանակներս Ալավերդում շահագործման կհանձնվի պղինձ զտելու գործարանը։ Նա կարտադրի էլեկտրոլիտային (զտված) պղինձ, որն անմիջականորեն կօգտագործվի ռեսպուբլիկայում կաբելներ և այլ իրեր արտադրելու համար։

Շուտով շահագործման կհանձնվի Երևանի ալյումինի գործարանը, որը հիմնական բազա կհանդիսանա ռեսպուբլիկայում մե-

տաղամշակման ու մեքենաշինական արդյունաբերության հետագա զարգացման համար։

Չորրորդ հնգամյակում ավարտվելու է Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատի շինարարությունը՝ Ղափանի շրջանում։ Այդ կոմբինատը բացի պղնձից, երկրին կտա նաև մոլիբդենի հարուստ կոնցենտրատներ, որոնք օգտագործվում են բարձրորակ պողպատների արտադրության մեջ։

## ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԷԼԵԿՏՐԱԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Հայրենական պատերազմից առաջ մեր ռեսպուբլիկայում մեքենաշինությունը և էլեկտրաարդյունաբերությունը բավարար չափով չէին զարգացել։ Պատերազմի տարիներին սկսվեց կաբելի հզոր գործարանի կառուցումը Երևանում, որը շահագործման է հանձնվելու չորրորդ հնգամյակի առաջին տարիներին։ Գործարանը արտադրելու է տարեկան 35 միլիոն ռուբլու կաբելային իրեր։

Կառուցվում է փոքր հիդրոտուրբինների գործարան, որը լրիվին կապահովի Հայաստանում և Անդրկովկասի եղբայրական ռեսպուբլիկաներում կառուցվող գյուղական հիդրոէլեկտրոկայանները հիդրոտուրբիններով։ Գործարանի կարողությունը հասնելու է տարեկան 300 հիդրոտուրբինի։

Կառուցվում է «Ավտոտրակտորդետալ» գործարան, որը արտադրելու է տարեկան 10 միլիոն ռուբլու ավտոմոբիլային ու տրակտորային պահեստի մասեր, կոմպրեսորային գործարանը արտադրելու է տարեկան 450 կոմպրեսոր, ժամացույցի գործարանը տարեկան տալու է 25 միլիոն ռուբլու արտադրանք, այդ թվում 600 հազար «բուդիլնիկ»։

Երևանի դազգահագործիքային գործարանը 1950 թվին կարտադրի 500 հատ մետաղահատ դազգահ։ Բացի դրանից, տեղական արդյունաբերության գծով Երևանում կառուցվելու է էլեկտրաչափիչ գործիքների գործարան և մի շարք մանր մեխանիկական գործարաններ՝ Էջմիածնում, Կիրովականում և Գորիսում։

## ՏԵՔՍՏԻԼ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Տեքստիլ արդյունաբերության գծով նախատեսվում է 1950 թվին թողարկել 44 միլիոն 800 հազար մետր բամբակեղեն գործ-

վածքներ, որը 60 տոկոսով գերազանցում է 1940 թվի արտադրությանը, երկու միլիոն 600 հազար մետր մետաքսեղեն գործվածքներ, 400 հազար մետր բրդեղեն գործվածքներ։

Ստալինյան հնգամյակների տարիներին ռեսպուբլիկայում արդեն ստեղծվել է բամբակեղենի զարգացած արդյունաբերություն։

Նոր հնգամյակում արտադրության ծավալի ավելացման հետ միասին նախատեսված է նաև բամբակեղեն գործվածքի ասորտիմենտի ընդարձակումն ու բարելավումը։ Այդ միջոցառումն ապահովելու է Լենինականի Տեքստիլ կոմբինատին կից նախշող-սպիտակեցնող գործարանի կառուցումը։ Կոմբինատը ներկայումս արտադրում է հիմնականում բյազ և բամբակեղեն դիագոնալ, իսկ նախշող-սպիտակեցնող ֆաբրիկան գործարկվելուց հետո կարտադրի սպիտակեղեն գործվածքներ՝ միտկալ, գրիզբոն, չիթ, սատին և այլ կտորեղեն։

Բրդեղենի արդյունաբերության գծով պետք է ավարտվի մահուդի գործարանի կառուցումը Երևանում։ Ընթացիկ տարվանից նա շահագործման է հանձնվելու և



արդեն 1946 թվին տալու է 100 հազար մետր բրդեղեն գործվածքներ։

Սկսվել է նաև մետաքսեղեն գործվածքների գործարանի վերակառուցումը, որը կապահովի մետաքսե բարձրորակ գործվածքների թողարկումը։

## ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Թեթև արդյունաբերության գծով նախատեսված է զգալիորեն ավելացնել արտադրության ծավալը, որը մեծ չափով անցնելու է նախապատերազմյան մակարդակի սահմաններից։

1950 թվին կոշկեղենի թողարկումը՝ համեմատած 1940 թվի հետ, եռապատկվում է և չորրորդ հնգամյակի վերջերին կազմելու է երկու միլիոն 550 հազար զույգ։

Գուլպաների և նասկիների թողարկումը կազմելու է 15 միլիոն 400 հազար զույգ, այսինքն՝ 1940 թվականի համեմատությամբ աճելու է 60 տոկոսով։

Տրիկոտաժային սպիտակեղենի թողարկումն ավելանալու է երկու անգամ։

Նոր հնգամյակում Կիրովականում կառուցվելու և շահագործման է հանձնվելու տրիկոտաժի գործարանը, Երևանում՝ կոշկե-

ղենի 3-րդ գործարանը, Լենինականում՝ գուլպայի և նասկու գործարանը, որն արտադրելու է բարձրորակ գուլպաներ։

Գործարանների կառուցման հետ միասին, 4-րդ հնգամյակում նախատեսված է վերակառուցել և ընդարձակել Լենինականի գուլպայի ու կոշկեղենի գործարանները, Երևանի՝ կաշվեղենի գործարանը, կարի ձեռնարկությունները։

## ՍՆՆԴԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թվականների հնգամյա պլանը նախատեսում է նաև սննդարդյունաբերության արտադրանքի զգալի աճ։

Հնգամյա պլանում նախատեսված է սննդարդյունաբերության արտադրանքի թողարկման հետևյալ ծավալը՝ ըստ հիմնական տեսակների.

| | |
|---|---|
| Բուսական յուղ | 6.000 տոննա |
| Շաքար | 6.500 տոննա |
| Խաղողի գինի | 2.000 հեկտոլիտր |
| Միս | 8.400 տոննա |
| Կենդանական յուղ | 800 տոննա |

Նախատեսված է նաև մեծ աճ կոնսերվի



արդյունաբերության, հացի, խմորեղենի և այլ ապրանքների արտադրության ասպարեզում։

1946—1950 թվականների ընթացքում կկառուցվեն և շահագործման կհանձնվեն Հոկտեմբերյանի կոնսերվի հզոր գործարանը, Համամլույում՝ շաքարի գործարանը, Աշտարակում՝ «Խերես» տիպի գինեգործարանը, Երևանի կոնյակի նոր գործարանը, ապակու և մի շարք այլ գինեգործական գործարաններ։

Չորրորդ հնգամյա պլանում նախատեսված է մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության արտադրության մեծ աճ։

1950 թվին ռեսպուբլիկայի մսեղենի արտադրանքը աճելու է 28 տոկոսով՝ համեմատած 1940 թվի հետ։ Կաթի հումքը լավագույն կերպով օգտագործելու և արդյունաբերական վերամշակման ենթարկելու համար, ռեսպուբլիկայի զանազան շրջաններում նախատեսված է կառուցել յուղի ու պանրի մեքենայացված ութ գործարան։

Չորրորդ հնգամյակի պլանում նախատեսված է կառուցել մսեղենի շրջանային երկու կոմբինատ, Երևանում՝ խոշոր սառցատուն,

որը զգալի չափով կմեղմացնի մեքենաների արդյունաբերության սեզոնայնությունը։

## ԱՆՏԱՌԱԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Չորրորդ հնգամյակում աճելու է նաև անտառային յարդյունաբերության արտադրանքը։ Շինափայտի փոխադրումը ավելանալու է համարյա երկու անգամ, վառափայտինը՝ մեկ և կես անգամ, սղոցած փայտեղենինը երկու անգամ։

Առանձնապես ընդարձակվելու է կահույքի արտադրությունը, որը 1940 թվականի համեմատությամբ աճելու է 275 տոկոսով։ Կահույքի թողարկման պլանն ապահովելու համար ռեսպուբլիկայում կառուցվում է կահույքի նոր գործարան, ինչպես նաև ֆաների գործարան։

## ՇԻՆԱՆՅՈՒԹԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Նոր հնգամյա պլանով նախատեսվող շինարարության ծավալը գերազանցում է առաջին հնգամյակում կատարած շինարարությանը՝ 6 անգամ, 2-րդ հնգամյակում՝ մոտ երկու անգամ և 3-րդ հնգամյակում՝ 1,7 անգամ։ Այս հանգամանքը կարևոր



խնդիրներ է դնում շինանյութերի արդյունաբերության առջև։

Շինանյութեր արտադրելու համար ռեսպուբլիկայում գոյություն ունեցող բնական հումքի հարուստ ռեսուրսները պետք է ի սպաս դրվեն հնգամյա պլանին։

Միմիայն շինանյութերի արդյունաբերության Գլխավոր վարչության գծով չորրորդ հնգամյակում նախատեսված է՝ Արթիկտուֆի, Անի-պեմզայի, շինանյութերի Երևանի գործարանի ընդարձակման և վերակառուցման հետ միասին կառուցել և շահագործման հանձնել մոտ 10 խոշոր արդյունաբերական օբեկտներ, այդ թվում ազբոշիֆերի, գաճի, շինարարական դետալների, կղմինդրի գործարաններ։

Շինանյութերի արտադրությունը լայն ծավալ է ընդունում նաև արհեստագործական կոոպերացիայի, շրջանային արդյունաբերական կոմբինատների, խոշոր շինարարությունների և կոլխոզների գծով։

Սովետական Միության ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թվականների հնգամյա պլանի Օրենքը մեր ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության արտադրանքի ծա-

վաղը սահմանում է 1950 թվին՝ 50 միլիոն ռուբլի և արհեստագործական կոոպերացիայի գծով՝ 110 միլիոն ռուբլի (1926—27 տարվա անփոփոխ գներով)։

Այդ նշանակում է, որ տեղական արդյունաբերության ձեռնարկությունների տարեկան արտադրանքը՝ (համեմատած 1940 թվի հետ) աճելու է 6 անգամ, իսկ արհեստագործական կոոպերացիայի հնգամյակի վերջում կրկնապատկելու է արտադրանքի նախապատերազմյան մակարդակը։

Զգալիորեն աճելու է կահույքի արտադրությունը, որը 1950 թվին կազմելու է 6 միլիոն ռուբլի՝ (1926—27 տարվա անփոփոխ գներով), մահճակալների արտադրությունը 1950 թվին աճելու է 4 անգամ՝ համեմատած նախապատերազմյան մակարդակի հետ։

Մեծ չափով ավելանալու է մետաղյա ամանեղենի թողարկումը և ընդարձակվելու է նրա ասորտիմենտը։ Ստեղծվում է ճենապակու արտադրություն, ընդարձակվում է կոշկեղենի արտադրությունը։

Զգալիորեն աճելու է գյուղատնտեսական ինվենտարի արտադրությունը։

Արհեստագործական կոոպերացիայի սիս-



տեմում հատուկ նշանակություն է տրվում գորգագործության զարգացմանը։ Գորգերի թողարկումը 1950 թվին հասնելու է 50 հազար քառակուսի մետրի՝ 1940 թվի 16,1 հազար քառակուսի մետրի դիմաց։

Զգալիորեն ավելանալու է արհեստագործական կոոպերացիայի մանվածքային բազան, որը հնարավորություն կտա ավելացնելու տրիկոտաժային իրերի և գործվածքների թողարկումը։

***

Վիթխարի են նոր հնգամյա պլանով մեր առաջ դրված խնդիրները։ Այդ խնդիրների անթերի և ժամանակին կատարումը Հայաստանի ողջ աշխատավորության պատվի գործն է։

Կենսագործելով ստալինյան չորրորդ հնգամյա պլանը մեր ռեսպուբլիկան կդառնա տնտեսապես և կուլտուրապես է՛լ ավելի հզոր և ծաղկուն։

Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ
(Հայկական ՍՍՌ-ի Պետպլանի նախագահ)

—–O—–

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՆ ՉՈՐՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

*Սովետական իշխանության տարիներին Հայաստանի էներգետիկ տնտեսությունը զգալի չափով զարգացավ։ 1920 թվից մինչև 1941 թիվը Հայաստանում գործարկվեցին մի շարք հիդրոկայաններ՝ Երևանի առաջին, երկրորդ, Լենինականի և Ձորագէսի հիդրոկայանները։*

*Սկսվել է Սևանի պրոբլեմի իրագործումը և այդեն շահագործման է հանձնվել Սևան—Զանգու կասկադի առաջին կայան Քանաքեռգէսը։*

*Կառուցվել է ավելի քան 400 կիլոմետր երկարությամբ արդյունաբերական նշանակություն ունեցող հաղորդման բարձրավոլտ գիծ. փնջավորվել են շրջանային բոլոր էլեկտրոկայանները, ստեղծվել է հայկական էներգետիկ սիստեմ, որը համապատասխանում է տեխնիկայի արդի պահանջներին։*



*Եթե 1913 թվին Հայաստանի բոլոր կայանների կարողությունը հավասար էր 3.100 կիլովատի, իսկ էլեկտրոէներգիայի տարեկան արտադրությունը՝ 5 միլիոն 100 հազար կիլովատ ժամի, 1919 թվին (դաշնակների տիրապետության օրոք) այդ կարողությունը հավասար էր 1.500 կիլովատի, իսկ էլեկտրոէներգիայի տարեկան արտադրությունը 1 միլիոն 500 հազար կիլովատ ժամի, ապա 1941 թվին էլեկտրոկայանների կարողությունը կազմում էր 109,400 կիլովատ, իսկ էլեկտրոէներգիայի տարեկան արտադրությունը՝476 միլիոն կիլովատ ժամ․*

*Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրոէներգիայի գործածությունը 1925 թվի 3 կիլովատ ժամից աճեց և 1941 թվին հասավ 400 կիլովատ ժամի։*

*Հայկական ՍՍՌ էլեկտրիֆիկացիան անց է կացվել տեխնիկական բարձր մակարդակի վրա։ Երևանի 2-րդ հիդրոկայանը ՍՍՌՄ-ում առաջինն էր միանգամայն ավտոմատիկորեն և հեռվից կառավարվող կայանների շարքում։ Քանաքեռի հիդրոկայանը Միության մեջ բարձր ճնշում ունեցող ամենահզոր կայանն է, որ աշխատում է Ֆրենսիսի տուրբիններով։*

Հայկական ՍՍՌ բարձրավոլտ ցանցը Եվրոպայում ամենաբարձրն է իր գծերով և այս տեսակետից գերազանցում է նույնիսկ Շվեյցարիայի բարձրավոլտ ցանցը և զիջում է միայն ԱՄՆ-ի Ժայռոտ լեռների ցանցին (4 մետրով)։

Հայաստանի էլեկտրիֆիկացիայի մակարդակը նախքան պատերազմը 60 տոկոսով գերազանցում էր ՍՍՌՄ-ի միջին մակարդակին։ Մինչդեռ ՍՍՌՄ-ում հիդրոկայանների բաժինը էլեկտրոէներգիայի արտադրության մեջ կազմում էր ընդհանուր առմամբ 10,5 տոկոս, Հայաստանում էներգիայի համարյա ամբողջ արտադրությունը բաժին էր ընկնում հիդրոկայաններին, իսկ պատերազմի փորձը ցույց տվեց, որ էլեկտրոէներգիայի ամենահուսալի աղբյուրը հանդիսանում են հիդրոէլեկտրոկայանները։

Հայաստանում էլեկտրոէներգիայի ամենախոշոր աղբյուրը հանդիսանում է Սևանա լիճը։ Լճի բնական վիճակում յուրաքանչյուր տարի նրա մեջ թափվող 1.322 միլիոն խոր. մետր մթնոլորտային տեղումներից գոլորշիանում է 1.212 միլիոն խորանարդ մետր և Զանգվի մեջ է թափվում միայն 110 միլիոն խոր. մետր, որից 50 միլիոն խոր.



մետրը կազմում է մակերեսային արտահոսումը և 60 միլիոն խոր. մետր՝ ստորերկրյա արտահոսումը։ Սևանի պրոբլեմի իրագործումից, այսինքն՝ ջրի մակարդակը լճում 50—60 մետր իջեցնելուց և ջրի դարավոր պաշարների մեծ մասը էներգետիկայի ու ոռոգման համար օգտագործելուց հետո կստեղծվի կայուն ռեժիմ։ Ջրի այդ հսկայական քանակությունը, որը մեկ ու կես անգամ ավելի է, քան ջրի բնական արտահոսումը Զանգու գետի մեջ, կարելի է օգտագործել ցանկացած գրաֆիկով և դարձնել էլեկտրոկայանների և ոռոգման կարգավորիչ։

Էներգետիկ-իրրիգացիոն կոմպլեքսային այն սիստեմը, որ ստեղծվում է Սևանա լճի հիման վրա, լրիվին կարող է ապահովել 225 հազար հեկտար հողային մասսիվի անխափան ոռոգումը։

Հնգամյա պլանի վերաբերյալ Օրենքը նախատեսում է Հայկական ՍՍՌ-ի էլեկտրոարդյունաբերության հետևյալ հիմնական թվերը՝ էլեկտրոէներգիայի արտադրությունը 1950 թվին կազմելու է 860 միլիոն կիլովատ ժամ, իսկ հիդրոկայանների կարողությունը

հնգամյակի ընթացքում աճելու է 102 հազար կիլովատ ի հաշիվ գործող հիդրոկայանների և Զանգվի ափին կառուցվող առաջին հերթի հիդրոկայանների գործարկման:

Ստալինյան չորրորդ հնգամյակում ծավալուն կերպով իրագործվելու է Սևանի պրոբլեմը: Քանաքեռգէսի տուրբինները նորացվելու հետևանքով այդ կայանը իր կարողությունը կավելացնի 12 տոկոսով, Ձորագէսում 3-րդ ագրեգատի հաստատումը կայանի կարողությունը կավելացնի 8 հազար կիլովատով: Շահագործման կհանձնվի Սևանի գլխամասի կառուցումը և լճային հիդրոկայանը, որը կունենա 32 հազար կիլովատ կարողություն և տարեկան կարտադրի 150 միլիոն կիլովատ ժամ էլեկտրոէներգիա: Կգործարկվի Սևանի կասկադում ամենահզոր կայան Գյումուշգէսի առաջին հերթը, այն է՝ 53.500 կիլովատանոց մեկ ագրեգատը:

Գյումուշգէսը կլինի ՍՍՌՄ բարձր ճնշման հիդրոկայաններից ամենախոշորը:

Գյումուշգէսի լրակատար կարողությունը կգերազանցի Քանաքեռգէսի կարողությանը և կկազմի 214 հազար կիլովատ, իսկ էլեկտրոէներգիայի տարեկան արտադրությունը՝



920 միլիոն կիլովատ ժամ: Տնտեսական ցուցանիշներով Գյումուշգէսը նույնպես գրավում է առաջին տեղը Սևան—Զանգու կասկադում և առաջին տեղերից մեկը՝ Միությունում:

Գյումուշգէսի էներգիայի նախագծային ինքնարժեքը շատ ավելի էժան կլինի, քան արդեն կառուցված և չորրորդ հնգամյակում կառուցվելիք ՍՍՌՄ մյուս բոլոր հիդրոկայաններում:

Չորրորդ հնգամյակում ինտենսիվ կերպով կշարունակվի նաև էլեկտրոցանցերի կառուցումը: Կկառուցվեն բարձրավոլտ գծեր լճային հիդրոկայանի և Գյումուշգէսի էներգիան սպառող շրջաններին հաղորդելու համար, այն է՝ 110 կիլովատանոց հաղորդման գիծ լճային հիդրոկայանից մինչև Կիրովական և 110 կիլովատանոց հաղորդման գիծ Գյումուշգէսից—Երևան և Գյումուշգէսից—Սևան:

Բացի դրանից, զգալիորեն կաճի միջին լարման բաշխիչ ցանցի երկարությունը:

Միաժամանակ գործող կայաններում համապատասխանորեն բարձրացվելու է շահագործման տեխնիկական մակարդակն ու կուլտուրան և արմատացվելու է նորագույն

տեխնիկան՝ ավտոմատիկան ու տելեմեխանիկան։

Էներգետիկ այն բազան, որը նախատեսվում է չորրորդ հնգամյակում, թույլ կտա էներգիայով ապահովել էլեկտրոքիմիայի, գունավոր մետալուրգիայի զարգացումը, ապահովել այդ երկու առաջատար ճյուղերի արտադրանքի հետագա վերամշակումը, տրանսպորտի, կենցաղի, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացիան։

Նախորդ տարիների նվաճումները, արդեն գոյություն ունեցող էներգետիկ օբյեկտներում շինարարության դպրոց անցած որակյալ կադրերի առկայությունը և Սովետական Հայաստանի էներգետիկների աշխատանքային խանդավառությունը հիմք են տալիս ասելու, որ պարտիայի ու կառավարության կողմից էներգետիկայի զարգացման բնագավառում տրված խնդիրները պատվով կկատարվեն։

Գ. ՏԵՐ-ԱԿՈՊՈՎ
(Հայէներգոյի կառավարչի տեղակալ և գլխավոր ինժեներ)

—— О ——

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՉՈՐՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Ստալինյան երեք հնգամյակների ընթացքում իր հիմքում ունենալով Հայաստանի էժան հիդրոէլեկտրոէներգիան և բազմապիսի բնական հարստությունները, մեր ռեսպուբլիկայում կազմակերպվեց և բուռն աճ ստացավ երիտասարդ քիմիական արդյունաբերությունը։ Կառուցվեցին և շահագործման հանձնվեցին միութենական նշանակություն ունեցող՝ Երևանի Կիրովի անվան գործարանը, Կիրովականի և Ալավերդու քիմիական գործարանները։

Չորրորդ հնգամյա պլանը է՛լ ավելի փայլուն ապագա է խոստանում մեր քիմիական արդյունաբերության համար։

Երևանի Կիրովի անվան գործարանը, որոշիչ դեր է խաղում Հայաստանի քիմիական արդյունաբերության մեջ։ Հնգամյա պլանի համաձայն նրա արտադրանքը ավելանալու է չորս անգամ։ Այդ ավելացումը պետք է

կատարվի հիմնական ցեխերի տեխնոլո-գիական պրոցեսների կատարելագործման ու ավտոմատացման հիման վրա:

Հնգամյա պլանի մասին Օրենքի 107-րդ կետի համաձայն ծրագրվում է Երևանում արտադրել 12 հազար տոննա կաուստիկ սոդա, որը ոչ միայն բավարարելու է Ձեթ-օճառ գործարանի կարիքները՝ օճառ ստա-նալու համար, այլև Բաքվի նավթարդյունա-բերության պահանջը՝ բարձրորակ բենզինի ստման համար:

Մեր ռեսպուբլիկայում մեծ թափով զար-գանալու է ացետիլենի քիմիան, դրա գրա-վականը հանդիսանում է Հայաստանի էժան և օրավուր ավելացող էլեկտրաէներգիան: Ացետիլենը օգտագործվում է կաուչուկ, քացախական թթու, պլաստմասսա ստանա-լու, երկաթը զոդելու և այլնի համար:

Ընդլայնվելու է Երևանի ավտոդողերի գործարանը, որն ըստ հնգամյա պլանի 1950 թվին ավտոդողերի արտադրանքը պետք է հասցնի 180 հազարի:

Նավթարդյունաբերության կարիքները բա-վարարելու համար կազմակերպվելու է ռե-տինյա անհրաժեշտ մասերի արտադրու-թյուն: Բացի այդ փոլորից, ազգաբնակչու-թյան կենցաղային կարիքները բավարարելու



համար արտադրվելու են ռետինյա բազմա-տեսակ իրեր, որոնց թվում կրկնակոշիկ և այլն:

Ժամանակակից տեխնիկայի հիման վրա Հիմնովին վերակառուցվելու է Ռետինի Ար-դյունաբերության Մինիստրության կարբի-դի գործարանը: Օգտագործվի կարբիդի վառարանների գազը, որը հիմա զուրկ է հանդիսանում:

Հայաստանի քիմիական արդյունաբերու-թյան երկրորդ կենտրոնը հանդիսանում է Կիրովականը: Նախատեսվում է Կիրովակա-նի քիմիական գործարանի ընդարձակումը: Չորրորդ հնգամյակում գործարկման պետք է հանձնվի ազոտային հարուստ պարար-տանյութ հանդիսացող ամիակային սելիտրա-յի գործարանը, եռապատկվելու է կալցիում կարբիդի ցեխի արտադրական կարողու-թյունը:

Կիրովականում կազմակերպվելու է նաև էթիլական սպիրտի, էթիլացետատի, սինթե-տիկ քացախաթթվի արտադրություն: Վեր-ջինի և ռեսպուբլիկայի բամբակազտիչ գոր-ծարանների թափթփուկ հանդիսացող լին-տերի բազայի վրա հետագայում կկազմա-կերպվի բարձրորակ արհեստական մետաք-սի արտադրություն:

Օրավուր մեծանում է պլաստմասսայի դերը մեքենաշինության և կենցաղի մեջ։ Նա իր մեխանիկական հատկություններով և թեթևությամբ շատ բնագավառներից դուրս է մղում թանկարժեք մետաղները։

Չորրորդ հնգամյակի առաջին տարիներում գործարկման պետք է հանձնվի բարձրորակ պլաստմասս արտադրող Երևանի «պոլիվինիլացետատի» գործարանը։ Այստեղ պլաստմասսայից կպատրաստվեն նաև լայն գործածության համար զանազան առարկաներ։

Սովետական Հայաստանի քիմիական արդյունաբերության զարգացման գլխավոր խնդիրներից մեկն էլ հանդիսանում է մեր գյուղատնտեսության համար անհրաժեշտ հանքային պարարտանյութերի արտադրությունը։ Հնգամյա պլանը նախատեսում է Ալավերդու քիմիական գործարանում 1950 թվին արտադրել 15 հազար տոննա սուպերֆոսֆատ։

Արտադրվելիք սուպերֆոսֆատը բարձրացնելու է հացաբույսերի և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը և հողը հարստացնելու է ֆոսֆորով։ Պետք է գործարկվի Կիրովականի ամիակային սելիտրա արտադրող գործարանը։ Ցանվող կուլտու-



րաները կարիք ունեն նաև ազոտի, բայց օդի մեջ եղած ազոտը նրանք չեն կարողանում յուրացնել, դրա փոխարեն նրանք լավ յուրացնում են հողում եղած լուծելի աղերի ազոտը, իսկ հնգամյակի ընթացքում արտադրվելիք հանքային պարարտանյութերը հարուստ են նշված նյութերով։ Այսպիսով, կարևորագույն խնդիրներից է նաև ազոտային պարարտանյութերի, հատկապես ցիանամիդի, և 34 տոկոս ազոտ պարունակող ամիակային սելիտրայի արտադրության ստեղծումն ու ընդլայնումը։

Բարձր բերք ստանալու և գյուղատնտեսության վնասատուների դեմ պայքարելու համար անհրաժեշտ են ծծմբածաղիկ և ծծմբարջասպ նյութերը, որոնց արտադրությունը ընդլայնվելու է Երևանում և Ալավերդում։

Քիմիական արդյունաբերության մանր ձեռնարկներ են գործարկվելու Տեղական Արդյունաբերության Մինիստրության գծով։ 1946 թվին Երևանում կառուցվելու է լաքաներկերի գործարան, որը արտադրելու է բարձրորակ լաքեր ու ներկեր։

Ժողովրդական առողջապահության համար խոշոր դեր է խաղալու Երևանում կառուցվող քիմիկոֆարմացևտիկ գործարանը, որը

արտադրելու է դեղորայք՝ քլորոֆորմ, քլորալդեհիդ, ֆենացետին, միջատներին, պարազիտներին ու գյուղատնտեսության վնասատուներին ոչնչացնող նյութեր և այլն։

Կասկած չկա, որ Հայաստանի քիմիական արդյունաբերության ֆրոնտի աշխատողները չեն խնայի իրենց եռանդն ու ջանքերը չորրորդ հնգամյակի առաջադրանքները ժամանակին ու անթերի կատարելու համար։

Բ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
(ՀԿ(բ)Պ Կենտկոմի Արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչի տեղակալ)

---o---

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

# ԱԳԻՏԱՏՈՐ ՀԱՅՐԻԿ ՍՈՂՈՄՈՆՅԱՆԸ

Մալիշկա գյուղի այգիներում և դաշտերում արդեն սկսվել են գարնան գյուղատնտեսական աշխատանքները։

Կոլխոզնիկները մեծ եռանդով փորում են այգիները, կատարում են էտը, ցանում են դաշտերը։ Դա հետպատերազմյան առաջին գարունն է, ստալինյան չորրորդ հնգամյակի առաջին գարունը։

Կոլխոզային աշխատանքների կազմակերպման գործում զգալի դեր են խաղում ագիտատորները։ Նրանց կարելի է գտնել ամենուրեք, աշխատանքի բոլոր ճյուղերում։

Ամեն անգամ դաշտ դուրս գալիս այգեգործական երկրորդ բրիգադայի առաջավոր կոլխոզնիկ Հայրիկ Սողոմոնյանը չի մոռանում իր հետ վերցնելու օրվա լրագրերը։ Հանգստի ժամերին կոլխոզնիկները շրջապատում են նրան— հարցնելով.

— Հայրիկ, ի՞նչ նորություն ունես։

Եվ այգեգործ Սողոմոնյանը կարդում է նրանց օրվա թարմ լրագրերը։ Վերջին մեկ ամսում կոլտնտեսականները ամենից շատ հետաքրքրվում են չորրորդ հնգամյակի խնդիրներով։ Այգեգործը ելնելով դրանից վերակառուցել է իր աշխատանքը։ Դեռ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի օրերին նա զրույցների միջոցով պատմում էր սեսիայի նիստերի մասին, այնուհետև կարդաց ընկ. Վոզնեսենսկու զեկուցումը և հնգամյա պլանի վերաբերյալ Օրենքը։

Կոլտնտեսականները աշխուժորեն հետաքրքրըվում են մեր ռեսպուբլիկայի, իրենց շրջանի և գյուղի հեռանկարներով։

Այգեգործ Սողոմոնյանը նախապես նյութեր է հավաքում և պատասխաններ տալիս կոլտնտեսականների հարցերին։

Նա ոգևորված իր ունկնդիրներին պատմում է իրենց կոլտնտեսի ապագայի մասին.

— Մենք այս հնգամյակում,— ասել է իր հերթական զրույցներից մեկի ժամանակ Հ. Սողոմոնյանը,— Նավլար սարից խմելու ջուր պիտի բերենք և գյուղից վերև ընկած հարթավայրում գոմեր պիտի կառուցենք։ Կառուցելու ենք նաև երկու մեղվանոց 25-ական մետր երկարությամբ, տնկելու ենք նոր այգիներ։



Գյուղում տարվող ագիտացիոն աշխատանքներին ակտիվ մասնակցություն են ցույց տալիս ուսուցիչները, նրանցից արժե նշել Արշավիր Առաքելյանի անունը։

Բոլոր բրիգադաներում միասին վերցրած աշխատում են 18 ագիտատորներ։ Նրանց կատարած աշխատանքը մեծ չափով օգնում է կոլտնտեսի առաջ դրված խնդիրները հաջողությամբ իրագործելու համար։

ՍԻՐԱԿԱՆ ԱՍԱՏՐՅԱՆ

(Միկոյանի շրջանի Մալիշկա գյուղի սկզբնական պարտկազմակերպության կազմակերպիչ)

——O——

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆԱԽԱՊԱՇԱՐՄՈՒՆՔԸ

Կյանքի պայքարում մարդիկ բազմաթիվ ստույգ և ճշգրիտ պատկերացումներ են կուտակել իրենց շրջապատող աշխարհի մասին։ Բնության գրեթե բոլոր երևույթները ծագում են ոչ թե ինքնին, այլ որոշ պատճառների շնորհիվ։ Չի կարող լինել անձրև, կայծակ կամ ամպրոպ, եթե չկա ամպ։ Եթե սերմ չցանենք, ապա հացահատիկ չի աճի։

Բայց այդ ճիշտ պատկերացումների և գիտելիքների հետ միասին, որոնց հիման վրա ծագել և զարգացել է գիտությունը, ստեղծվել են ոչ պակաս թվով սխալ, անմիտ, կեղծ հասկացողություններ։ Երևույթների միջև այդ կեղծ կապերի մասին եղած հավատի հիման վրա առաջացել է նախապաշարմունքը, այսինքն կեղծ հավատը։

Բոլորին հայտնի է «նա այսօր ձախ ոտքի վրա է վեր կացել» արտահայտությունը։



Այսպես են ասում այն մարդու մասին, որն առանց պատճառի բարկանում է, յուրաքանչյուր խոսքի մեջ կռվելու պատրվակ փնտրում։ Կամ լսում ենք. «աղը թափեց, կռիվ կլինի», «կատուն ճանապարհդ կտրեց, լավ նշան չի»։ Երեխան հիվանդանալու դեպքում մայրն ասում է՝ «երեխին աչքով են տվել»։ Յուրաքանչյուրին հայտնի են սնահավատության այդ նմուշները։ Կուլտուրական մարդը վերաբերվում է դրանց, որպես հնադարյան, վայրենական շրջանի մնացորդ, բայց շատ մարդիկ շարունակում են հավատալ, որ այդ անմիտ նշանները որևէ բան կարող են նշանակել։

Ինչո՞ւ է վատ տրամադրությունը կապվում այն բանի հետ, որ մարդը առավոտյան «ձախ ոտքի» վրա է վեր կացել։ Ինչո՞ւ պետք է «թափված աղը» կռիվ առաջացնի, ո՞րն է այստեղ կապը։

Հասկանալի է, որ ոչ մի ուղղակի կապ չկա։ Բայց մենք ասում ենք, որ չկա հետևանք առանց պատճառի, ուրեմն՝ եղել են որոշ պատճառներ, որոնք ստեղծել են սնահավատության այս նշանները և նրանց ակունքները պետք է փնտրել հեռու անցյալում։

Օրինակ՝ ինչից է առաջացել աղի հետ

կապված նախապաշարմունքը։ Ըստ երևույթին հնում աղը մեծ դանձ է եղել և դրա համար էլ նրա թափելը մեծ անախորժություն է առաջ բերել ընտանիքներում։ Այժմ աղը էժան է, բայց հնում եղած պատկերացումների մնացորդները պահպանվել են սնահավատության մեջ։

Ինչի՞ց է առաջացել «ձախ ոտքի» մասին եղած նախապաշարմունքը։ Դա նորից բացատրվում է բարու և չարի, աջի ու ձախի մասին եղած հասկացողությամբ։ Աջը — ճիշտ է, բարի, իսկ ձախը՝ ոչ ճիշտ, ոչ բարի, չար։

Սնահավատությունը վախի ծնունդ է։ Այն ամենը ինչ մարդ ինքն իրեն բացատրել չէր կարողանում, թվում էր նրան հրաշք, խորհրդավոր և վախ էր ներշնչում նրան։ Այդ վախը բազմապատկվում էր բնության ահեղ երևույթների հանդեպ մարդու անզորությամբ։ Բնության երևույթները բացատրել չկարողանալով, մարդը ստեղծեց երկրի և երկնքի, կրակի և խավարի, ջրի և այլն խորհրդավոր տիրակալներ, նա բնությունը օժտեց հարյուրավոր տարբեր ոգիներով, որոնց թվում և՛ չար, և՛ բարի, նա պաշտում էր այդ ուժերին, աստվածներին և ընծաբերություններ անում նրանց՝ օգնու-



թյուն հայցելով իր համար։ Այսպես, Սառուցյալ օվկիանոսի հյուսիս-արևելյան ծովափի բնակիչների կենցաղում արմատացել էին և՛ ահավոր աստվածներ, և՛ ահավոր սնոտիապաշտական սովորություններ։ Օրինակ՝ ջուրն ընկնող մարդը փրկվելու իրավունք չուներ, նա պարտավոր էր մեռնել, որովհետև նրան իր մոտ էր կանչել ջրի ոգին։

Այդ սովորությունը բացատրվում է նրանով, որ ծայր հյուսիսի ժողովուրդներին հայտնի չէր լողալու արվեստը։

Որոշ տեղերում կախարդները հիվանդությունը վանում էին մտրակով, կամ վայրենի պարերով ու երգերով, ենթադրելով, որ հիվանդությունը չար ոգի է, որը մտել է հիվանդի մեջ և ներքուստ չանկռտում է նրան։ Դեռ այսօր էլ տեղ-տեղ գաղտնի կերպով գործում են կախարդներ, որոնք առատորեն սերմանում են սնոտիապաշտություն։

Մարդկանց վաղուց ի վեր հուզում էին երկնային արտասովոր երևույթներ — արևի և լուսնի խավարումը, գիսավոր աստղերի հայտնվելը, երկրաշարժերը և շատ ուրիշ բաներ, որոնց մարդը չէր կարողանում հասկանալ։ Գիսավոր աստղի հայտնվելը սով-

խաքար կապվում էր դժբախտությունների, պատերազմի հետ։ Սակայն մենք պատմությունից գիտենք, որ երկրագնդի վրա գրեթե չի եղել մի խաղաղ տարի, մինչդեռ այդ ժամանակամիջոցում ընդամենը մի քանի գիսավոր աստղեր են երևացել։

Երբեմն մարդու բախտը կապում էին աստղի հետ։ Մի աստղաբաշխ, մի պալատական տիկնոջ մահ էր նախագուշակել և նա իրոք մեռավ, գուցե և ոչ առանց աստղաբաշխի մասնակցության, որովհետև նրանք հաճախ դիմում էին այդպիսի միջոցների՝ իրենց հզորության հանդեպ հավատը ամրապնդելու համար։

Վշտահար թագավորը որոշեց սպանել աստղաբաշխին և կանչելով նրան իր մոտ, հարցրեց. «Դու ասում ես ահա, որ ապագան քեզ հայտնի է, դե ուրեմն ասա, թե ինչքան է մնում քեզ ապրելու»։ Աստղաբաշխը հասկանալով, որ հասել է իր վերջը, պատասխանեց. «Արքա, աստղերը ինձնից գաղտնիք չունեն և նրանք ինձ հայտնել են, որ ես մեռնելու եմ Ձերդ գերազանցության մահվանից երեք օր առաջ»։ Սնոտիապաշտ թագավորը շփոթվեց և ոչ միայն չսպանեց խաբեբային, այլև ամեն կերպ պահպանում էր նրան վտանգից և վաղաժամ մահից։



Մարդու բախտը անօրինող անմիտ հավատը դեպի երկնային երևույթները, երջանիկ աստղերը, խորհրդավոր ուժերը ամեն կերպ պահպանում էին և ներկայումս էլ շատ երկրներում պահպանում են տիրող դասակարգերը, որովհետև այդպիսի հավատը օգնում է նրանց՝ տգիտության և հնազանդության մեջ պահելու ժողովրդին։

Մեր երկրում ուր չկա ժողովրդին ստրկության մեջ պահելու համար խավարը, տգիտությունը պահպանող շահագործողների ճնշումը, գիտությունն ու տեխնիկան դարձել են մատչելի աշխատավորության համար։ Սնոտիապաշտությունը սկսել է արագորեն վերանալ, բայց դեռևս նա հեռու է իսպառ անհետանալուց, որովհետև մենք գիտենք, որ մարդկանց գիտակցությունը միշտ էլ զգալիորեն հետ է մնում նրանց նյութական գոյության պայմանների փոփոխություններից։ Նախապաշարմունքների դեմ պայքարի գործում հզոր զենք է հանդիսանում տեխնիկան։

Ցածր կուլտուրայի տեր մարդուն, որը դեռ գաղափար չունի էլեկտրականության, կոյուղու, ավտոմոբիլի, սավառնակի, սուզանավի, ռադիոյի, հնչուն կինոյի մասին, այս բոլորը հրաշքներ կարող են թվալ, բայց

մեզ համար դա գիտության ծնունդ— տեխնիկան է, գիտություն, որը մատչելի է դարձել մեր մեծ Հայրենիքի յուրաքանչյուր քաղաքացուն։

Հասարակական հարաբերությունների զարգացման, գիտության և տեխնիկայի աճման հետ միասին, իհարկե, նախապաշարմունքները աստիճանաբար կանհետանան, կոչնչանան, բայց աչքաթող չպետք է անել, որ նախապաշարմունքները դեռևս ամուր են պահպանվում հետամնաց մարդկանց գիտակցության մեջ։

Սնոտիապաշտ մարդիկ չեն կարող դառնալ նոր աշխարհի լիարժեք կառուցողներ։ Այդպիսի մարդիկ կարգելակեն մեր առաջխաղացումը, կփանդաղեցնեն մարդկային մտքի հաղթական ընթացքը, ուստի մեր առօրյա անհետաձգելի խնդիրն է՝ պայքարել նախապաշարմունքների դեմ։

Հ. ԲԱՏԻԿՅԱՆ
(Բիոլոգիական գիտությունների թեկնածու)



# ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

...Այժմ և միայն այժմ է հանդիսանում այն ասպարեզը, որտեղ աշխատանքի մարդը կարող է իրեն երևան բերել, կարող է մի քիչ մեջքը շտկել, կարող է ուղղվել, կարող է իրեն մարդ զգալ։

Վ. Ի. ԼԵՆԻՆ

...Աշխատանքը մեզ մոտ հասարակական նշանակություն ունի, նա պատվի ու փառքի գործ է։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ

Սոցիալիստական մրցությունն ասում է. մեկը աշխատում է վատ, մյուսը լավ, երրորդը ավելի լավ,— հասի՛ր լավագույնին և ձեռք բեր ընդհանուր վերելք։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ

...Որպեսզի սովորենք լավ աշխատել, անհրաժեշտ է անկեղծորեն հրապուրվել աշխատանքով, առանց հրապուրվելու աշխատել չես սովորի։

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ

Աշխատանքը — մեր աղոթքն է։

Ա. Ի. ԳԵՐՑԵՆ

Ես գիտեմ ինչ բան է աշխատանքը. դա բոլոր ուրախությունների աղբյուրն է, ամենալավ բանը աշխարհում։

Ա. Մ. ԳՈՐԿԻ

Միակ բախտավորությունը աշխատանքն է

Վ. ԲՐՅՈՒՍՈՎ

Ի՜նչ ազնիվ է աշխատանքը
Առողջ ձեռքով, խաղաղ հոգով,
Ի՜նչ թեթև է անցնում կյանքը
Լիքը սիրով, ուրախ երգով։

ՀՈՎ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Աշխատանքը մայրն է ամեն բարիքի,
ծուլությունը՝ չարիքի։

Աշխատանքը լեռներ կհավասարեցնի։



Գործը վարպետից է վախենում, ոչ թե վարպետը գործից։

Ով աշխատի՝ նա կուտի, ով չաշխատի՝ թող չուտի։

Ամռան թե պառկեմ հովեր, ձմռան կսատկեն կովեր։

Մարդը աշխատանքի համար է ստեղծված։

Էն ձեռը որ աշխատեց, չի մուրա։

Աշխատանքը աշխատողինն է։

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՍԱՑՎԱԾՔՆԵՐ

—O—

## ԴՈՒ Գիտե՞ք արդյոք

★ Որ աշխարհի ամենահզոր ռադիոկայանը դա Մոսկվայի 500 կիլովատանոց ռադիոկայանն է։

★ Առաջին նամականիշը գործածվել է Անգլիայում 1840 թվականին։

★ Ամենաթանկ մետաղը ռադիումն է։

★ Աշխարհում ամենաերկար ջրանցքը ընկեր Ստալինի անվան Սպիտակ—Բալթիկ ծովերը միացնող ջրանցքն է, որն ունի 227 կիլոմետր երկարություն։

★ Աշխարհում ամենաբարձր աշտարակը Էյֆելյան աշտարակն է Փարիզում, որը կառուցվել է 1889 թվին և ունի 300 մետր բարձրություն։

★ Բամբակի հյուսվածքներն այնքան ամուր են, որ նրանցից կարելի է ածելու լեզվակներ պատրաստել։

★ Այն մատերիան, որից կազմված է Չիների համաստեղության Վան-Մանեն



աստղը, կես միլիոն անգամ ջրից խիտ է։ Այդ նյութից բաղի մեծության գնդիկը կկշռեր մի ամբողջ տոննա։

★ Գիտնականները հաշվել են, որ ծովերում և օվկիանոսներում պարունակում են 15 հազար բիլիոն տոննա աղեր, որոնց քանակությունը նույնիսկ դժվար է պատկերացնել։ Այդ քանակության աղը հերիք կաներ Եվրոպան երկու և կես կիլոմետր հաստություն ունեցող շերտով լրիվ ծածկելու համար։

★ Գոյություն ունեցող կենդանիներից ամենախոշորը կետն է (հատկապես կապտավուն տեսակը)։ Կետը 35—40 անգամ ավելի ծանր է քան փիղը։ Հազվագյուտ չեն 30 մետրանոց և 150 տոննա կշիռ ունեցող կետերը։ Այդպիսի մի կետից կետորսները ստացել են 60 հազար կիլոգրամ միս, 30 հազար կիլոգրամ ճարպ, 25 հազար կիլոգրամ կետի մազեր (բեխիկներ), նրա լեզուն կշռել է 3,5 տոննա։ Նոր ծնված փոքրիկ կետը 7—8 մետր երկարություն ունի և կշռում է 2 տոննա, որն ամեն օր գիրանում է

100 կիլոգրամով և 7—8 ամսական հասակում կշռում է 24 տոննա։

★ Ամիսների ներկա անունները տրվել են հռոմեացիների կողմից մոտ 2.000 տարի առաջ։ Նրանք կապված են հռոմեական աստվածների, կեսարների կամ հռոմեական հաշվարկի հետ։ Այսպես, առաջին ամիսը, հունվար անվանվել է Յանուս աստծո անունով, որը սկիզբն է ամեն ինչի, մարտ՝ ի պատիվ ամենահին աստծո, որը անձնավորում է բնության ուժը, ապրիլ ծագել է «ապերիրե» բառից՝ բաց անել (ապրիլ ամսում բացվում են ծառերի բողբոջները), մայիս՝ դաշտերի և անտառների աստվածուհու Մայի անունով, հուլիս և օգոստոս՝ հռոմեական Հուլիոս Կեսար և Օգոստոս կեսարների անուններով, դեկտեմբեր հռոմեական 10-րդ թվարկությունը (այն ժամանակ տարին կազմված էր տասը ամիսներից)։

---

# ԹԵՄԱՏԻԿ ՊԼԱՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1946—1950 Թ. Թ. ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ՄԱՍԻՆ ԱՆՑԿԱՑՎԵԼԻՔ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ

1. Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման պլանի հիմնական խնդիրները։

2. Հայաստանի արդյունաբերության զարգացման պլանը չորրորդ հնգամյակում։

3. Էներգետիկայի արդյունաբերության զարգացման պլանը 1946—1950 թվականներին։

4. Քիմիական և գունավոր մետաղների արդյունաբերության զարգացման պլանը նոր հնգամյակում։

5. Թեթև արդյունաբերության զարգացման պլանը չորրորդ հնգամյակում։

6. Սննդի արդյունաբերության զարգացման պլանը նոր հնգամյակում։

7. Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության զարգացման պլանը 1946—1950 թվականներին։

8. Տեխնիկական կուլտուրաների զարգացման պլանը նոր հնգամյակում։

9. Ժողովրդական լուսավորության, առողջապահության, գիտության և արվեստի զարգացումը չորրորդ հնգամյակում։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


1. Ընկեր Ի. Վ. Ստալինի ճառը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի նախընտրական ժողովում 1946 թվի փետրվարի 9-ին։

2. Ընկեր Ն. Ա. Վոզնեսենսկու զեկուցումը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին (Հայկական ՍՍՌ վերաբերյալ հատվածը)։

3. Օրենք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։

4. Նյութեր ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա





պլանի մասին։ (Կազմված է Հ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի կողմից)։


## ՀՈԴՎԱԾՆԵՐ


1. Ստալինյան պլանը գործողության մեջ։ «Սովետական Հայաստան» 1946 թ. 3 IV.

2. Երևանը Ստալինյան չորրորդ հնգամյակում։ «Ս. Հ.» 1946 թ. 7 IV.

3. Սովետական Հայաստանը ստալինյան 4-րդ հնգամյակում (նյութեր թեթև արդյունաբերության մասին)։ «Ս.Հ.» 1946 թ.11 IV.

4. Ավտոմոբիլային տրանսպորտը։ «Ս. Հ.» 1946 թ. 10 IV.

5. Սովետական Հայաստանը ստալինյան 4-րդ հնգամյակում (նյութեր արդյունաբերության մասին)։ «Ս. Հ.» 1946 թ. 12 IV.

6. Սովետական Հայաստանը ստալինյան 4-րդ հնգամյակում (նյութեր էլեկտրիֆիկացիայի մասին)։ «Ս. Հ.» 1946 թ. 13 IV.

7. Սովետական Հայաստանը ստալինյան 4-րդ հնգամյակում (նյութեր սննդարդյունաբերության մասին)։ «Ս. Հ.» 1946 թ. 17 IV.

8. Սովետական Հայաստանի գիտությունը նոր հնգամյակում։ «Ս. Հ.» 1946 թ. 14 IV.

9. Սովետական Հայաստանը ստալինյան 4-րդ հնգամյակում (նյութեր ժողովրդական առողջապահության մասին)։ «Ս. Հ.» 1946 թ. 16 IV.

10. Զրույցներ 4-րդ հնգամյա պլանի մասին։ «Ագիտատորի Բլոկնոտ» 1946 թ. № 9։

---o---

Պատասխանատու խմբագիր՝ Ս. ԱՐԵՇՅԱՆ

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռ. 23—30։

ՎՖ 00894. պատվեր № 575. տիրաժ 10.000
Ստորագրված է տպագրության 29/IV 1946 թ.

ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ և Հրատ Վարչ. № 2 տպարան, Երևան